Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿ(Բ)Պ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# Ագիտատորի ԲԼՈԿՆՈՏ

№ 23 ԴԵԿՏԵՄԲԵՐ 1949

ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



Խմբագրության հասցեն.— Երևան, Նալբանդյան 32, ՀԿ(բ)Պ Կենտկոմի Պրոպագանդայի և ագիտացիայի բաժին, Հեռախոս՝ 2—52—78։

# ՀԱՅԱՍՏԱՆՈՒՄ ՍՈՎԵՏԱԿԱՆ ԿԱՐԳԵՐԻ ՀԱՍՏԱՏՄԱՆ 29-ՐԴ ՏԱՐԵԴԱՐՁԸ

## (Նյութեր զեկուցումների և զրույցների համար)

Հայաստանում Սովետական կարգերի հաստատման 29-րդ տարեդարձը ռեսպուբլիկայի աշխատավորները դիմավորում են հետպատերազմյան Ստալինյան նոր հնգամյակի չորրորդ տարվա պլանների կատարման ասպարեզում ձեռք բերած խոշոր հաջողությունների պայմաններում, սոցիալիստական արդյունաբերության, գյուղատնտեսության և կուլտուրայի նոր, հզոր վերելքի պայմաններում։

Հայաստանում սովետական կարգերի հաստատումը հնարավոր դարձավ Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի հաղթանակի շնորհիվ։ Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիան հզոր լուսարձակի պես լուսավորեց աշխարհի բոլոր ճնշված ժողովուրդների, այդ թվում նաև հայ

ժողովրդի ազատագրական պայքարի ուղին,
ուժեղացրեց նրանց պայքարը աշխատավո-
րության բոլոր թշնամիների դեմ։

Հայ աշխատավորությունը ջերմորեն ող-
ջունեց Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ
Ռևոլյուցիայի հաղթանակը և իր բախտը կա-
պեց նրա հետ։ Դաշնակների անարգ տիրա-
պետության դեմ ապստամբված Հայաստանի
աշխատավորությանը օգնության հասավ ռուս
մեծ ժողովուրդը։ Հայ ժողովրդի ազատա-
գրական պայքարը ոգեշնչեց, կազմակերպեց
և ղեկավարեց մեծ Ստալինը։ 1920 թվի նո-
յեմբերին ընկեր Ստալինը, գալով Բաքու,
Անդրկովկասի և Հայաստանի բոլշևիկների
առաջ խնդիր դրեց՝ «Պետք է ինչ էլ որ լինի
փրկել Հայաստանը, շուտով փրկել Հայաս-
տանը»։ Հայաստանը կործանումից անհա-
պաղ փրկելու ստալինյան կոչը ջ՛լ ավելի
ծավալեց և ուժեղացրեց Հայաստանի բան-
վորների և աշխատավոր գյուղացիների ռևո-
լյուցիոն պայքարը իրենց ամենաոխերիմ
թշնամի դաշնակների դեմ։ Հայաստանի բո-
լոր գավառներում և շրջաններում բռնկվե-
ցին ապստամբությունները։

Լենինի և Ստալինի ցուցումներով, նը-
րանց զինակիցներ Օրջոնիկիձեի, Կիրովի ու



Միկոյանի անմիջական ղեկավարությամբ
Հայաստանին օգնության եկան Սովետական
Ռուսաստանի պանծալի 11-րդ Բանա-
կի զորամասերը։ Ապստամբված հայ աշ-
խատավորությունը, ռուս մեծ ժողովըր-
դի աջակցությամբ, Կարմիր Բանակի օգ-
նությամբ, Լենինի և Ստալինի պարտիա-
յի ղեկավարությամբ 1920 թվի նո-
յեմբերի 29-ին տապալեց դաշնակցականնե-
րի արյունոտ տիրապետությունը։ Այդ նույն
օրը կազմվեց ռևոլյուցիոն կոմիտե, որն իր
հրապարակած դեկլարացիայով Հայաստանը
հայտարարեց Սովետական և երկրի իշխա-
նությունը վերցրեց իր ձեռքը։ Իր ընդունած
պատմական դեկլարացիայով Ռևոլյուցիոն
Կոմիտեն ազդարարեց՝ «Հայաստանի ապըս-
տամբ ժողովրդի կամքով ու ցանկությամբ
Հայաստանի կոմունիստական (բոլշևիկյան)
պարտիան այսօրվանից Հայաստանը հայ-
տարարում է Սոցիալիստական Սովետական
Ռեսպուբլիկա։ Այսօրվանից Սովետական
Հայաստանի Կարմիր դրոշակը պաշտպանե-
լու է նրա աշխատավոր ժողովրդին ճնշող-
ների դարավոր լծից»։

Հայաստանը փրկվեց կործանումից և ֆի-
զիկական բնաջնջումից։ Հայաստանի բան-
վորները, աշխատավոր մասսաները ազատ-

վեցին շահագործումից և ամեն տեսակ ճըն-
շումից։
Ողջունելով Հայաստանում Սովետական
իշխանության հաստատումը ընկեր Ստալինը
գրել է. «Տանջված ու բազմաչարչար, Ան-
տանտայի և դաշնակների ողորմածությամբ
սովի, քայքայման ու գաղթի մատնված Հա-
յաստանը,— բոլոր «բարեկամների» կողմից
խաբված այդ Հայաստանը այժմ իր փրկու-
թյունը գտավ այն բանի մեջ, որ իրեն հայ-
տարարեց սովետական երկիր... Միայն Սո-
վետական իշխանության գաղափարը Հա-
յաստանին բերեց խաղաղություն և ազգա-
յին վերածննդի հնարավորություն»։

***

Դաշնակցականների տխրահռչակ տիրա-
պետության տապալումից հետո Սովետական
Հայաստանի աշխատավորությունը անցավ
խաղաղ, ստեղծարար աշխատանքի։ Նա
ՍՍՌՄ ժողովուրդների եղբայրական միաս-
նական ընտանիքում սերտորեն համախմբ-
ված, նրա օգնությամբ, հատկապես ռուս մեծ
ժողովրդի օգնությամբ, Լենինի-Ստալինի
պարտիայի ղեկավարությամբ, դաշնակների
կողմից փլատակների և մոխրակույտի վե-
րածված Հայաստանը դարձրեց Սոցիալիս-
տական զարգացած ռեսպուբլիկա։



Սովետական իշխանության տարիներին
արմատապես փոխվեց Հայաստանի դեմքը։
Լենինյան-ստալինյան ազգային քաղաքա-
կանության շնորհիվ, ստալինյան հոյակապ
հնգամյակների տարիներին Հայաստանը հե-
տամնաց ագրարային երկրից վերածվեց հը-
զոր ինդուստրիայի երկրի, բարձր տեխնի-
կայով զինված սոցիալիստական հողագոր-
ծության երկրի, բովանդակությամբ սոցիա-
լիստական, ձևով ազգային առաջավոր կուլ-
տուրայի երկրի։
Հայրենական Մեծ պատերազմի տարինե-
րին հայ ժողովուրդը, Սովետական Միության
եղբայրական ժողովուրդների հետ միասին,
կրծքով պաշտպան կանգնեց իր Սովետա-
կան Սոցիալիստական Հայրենիքին, ակտիվ
մասնակցություն ունեցավ Ֆաշիստական
Գերմանիայի և իմպերիալիստական Ճապո-
նիայի ջախջախման գործում։
Պատերազմի հաղթական ավարտումից հե-
տո Հայաստանի աշխատավորությունը բոլ-
շևիկների պարտիայի ղեկավարությամբ ձեռ-
նամուխ եղավ ժողովրդական տնտեսության
վերականգնման և զարգացման հետպատե-
րազմյան նոր հնգամյա պլանի կենսագործ-
մանը։ Ռեսպուբլիկայում արագ թափով զար-
գանում է սոցիալիստական արդյունաբերու-

Թյունը, որը կազմում է նրա ողջ ժողովրդական տնտեսության հիմքը։

Արդյունաբերության զարգացման հարաճուն տեմպերի մասին են վկայում այն փաստերը, որ Ստալինյան նոր հնգամյակի առաջին երկու տարիների ընթացքում ռեսպուբլիկան արդյունաբերության իր պլանը կատարեց 102 տոկոսով։ Հնգամյակի երկրորդ տարվա վերջին արդյունաբերության համախառն արտադրանքը գերազանցեց նախապատերազմյան մակարդակը։ 1948 թվին ամբողջ արդյունաբերության համախառն արտադրանքի պլանը կատարվեց 110,6 տոկոսով, որը նախորդ տարվա համեմատությամբ աճեց 22 տոկոսով, իսկ նախապատերազմյան 1940 թվի համեմատությամբ, 66,3 տոկոսով։ 1949 թվի 3-րդ եռամսյակի համախառն արտադրանքի պլանը կատարվեց 104 տոկոսով, որը 1948 թվի համապատասխան եռամսյակի համեմատությամբ աճեց 26 տոկոսով։ Ռեսպուբլիկայի տասնյակ արդյունաբերական ձեռնարկություններ Հայաստանում սովետական կարգերի հաստատման 29-րդ տարեդարձը դիմավորում են արտադրական բարձր ցուցանիշներով։ Երևանի Կիրովի անվան գործարանի, Ձերժինսկու անվան Դազգահաշինական գործարա-



նի, Էլեկտրամեքենաշինական, Կաբբիդի գործարանների, Լենինականի Տեքստիլ կոմբինատի կոլեկտիվները համամիութենական սոցիալիստական մրցության մեջ հաղթող են ճանաչվել, նվաճել են փոխանցիկ կարմիր դրոշ, արժանացել են մրցանակի։ Ռեսպուբլիկայի մի շարք գործարաններ՝ Երևանի Ավտոդողերի, Ավտոդետալ գործարանների, Մխախոտի ֆաբրիկայի, Կիրովականի Մյասնիկյանի անվան գործարանի աշխատողները ժամկետից շուտ կատարել են ընթացիկ տարվա երրորդ եռամսյակի և ոմանք էլ տարեկան արտադրական պլանները։

Հայաստանում սովետական կարգերի հաստատման 29-րդ տարեդարձի նախօրյակին արտադրական խոշոր հաղթանակ ձեռք բերեց Ձերժինսկու անվան դազգահաշինական գործարանը։ Լայնորեն ծավալելով սոցիալիստական մրցությունը և կանգնելով ստախանովյան հերթափոխության ի պատիվ պանծալի տարեդարձի, գործարանը նոյեմբերի 21-ին կատարեց իր հնգամյա պլանը։ Գործարանի կոլեկտիվը պարտավորվեց մինչև տարվա վերջը երկրին տալ և տասնյակ մետաղահատ դազգահ։

Սևանի հիդրոէլեկտրակայանը շահագործ-

մաՆ հանձնելու կապակցությամբ վերջերս
ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահության
հրամանագրով ՍՍՌՄ էլեկտրակայանների
մինիստրության Սևանի հիդրոէլեկտրակա-
յանի շինարարության 194 աշխատողներ
պարգևատրվեցին շքանշաններով ու մեդալ-
ներով։

Մեր ռեսպուբլիկայում Միութենական մի-
նիստրությունների ձեռնարկություններից
1949 թվի 3-րդ եռամսյակի պլանը գերա-
կատարել են Մետալուրգիական արդյունա-
բերության, Քիմիական արդյունաբերության,
Ավտոմոբիլային և տրակտորային արդյու-
նաբերության, Էլեկտրաարդյունաբերության,
Շինանյութերի արդյունաբերության, Թեթև
արդյունաբերության, Սննդի արդյունաբերու-
թյան մինիստրությունների ձեռնարկություն-
ները։ Ռեսպուբլիկական և տեղական ենթա-
կայության արդյունաբերական ձեռնարկու-
թյուններից ընթացիկ տարվա 3-րդ եռամ-
սյակի պլանը գերակատարել են Անտառա-
յին և թղթի արդյունաբերության, Մսեղենի
և կաթնեղենի արդյունաբերության, Թեթև
արդյունաբերության մինիստրությունների
ձեռնարկությունները, Հայկական ՍՍՌ Մի-
նիստրների Սովետին կից Արհեստագործա-
կան կոոպերացիայի վարչությունը, Հաշմ-



կոոպ միությունը, ոչ արդյունաբերական
մինիստրությունների ու գերատեսչություն-
ների ձեռնարկությունները։

Մեր ռեսպուբլիկայում կան շատ գործա-
րաններ, առանձին ցեխեր, բրիգադաներ,
հազարավոր բանվորներ, որոնք ժամկետից
շուտ կատարել են իրենց արտադրական պը-
լանները և աշխատում են 1950 թվականի
պլանների վրա և 1951—54 թվերի հաշվին։
Նախահոկտեմբերյան սոցիալիստական մըր-
ցության մեջ մտած 30 հազար բանվոր երի-
տասարդներ պատվով կատարեցին իրենց
ստանձնած պարտավորությունները. Նրան-
ցից 5.235 մարդ կատարել են հնգամյա պը-
լանը, 2.125-ը աշխատում են 1951—54 թը-
վականների հաշվին։

Ռեսպուբլիկայի հետպատերազմյան հըն-
գամյա պլանի կատարումը ուղեկցվում է ար-
դյունաբերական նոր շինարարության ծավա-
լումով, հների վերասարքավորումով։ Հետ-
պատերազմյան հնգամյակի երեք տարիների
և 10 ամիսների ընթացքում վերասարքավոր-
ված, կառուցված և գործարկված են բազմա-
թիվ պետական և կոոպերատիվ արդյունաբե-
րական ձեռնարկություններ։ Իրար ետևից
շահագործման են հանձնվում նոր հնգամյա-
կի նորակառույցները։ Սովետական իշխա-

ռեսպուբլիկայում ըն-
նության տարիներին
տեղծվել են արդյունաբերության այնպիսի
նոր ճյուղեր, ինչպիսիք են մետալուրգիա-
կան, մեքենաշինական, էլեկտրական, շինա-
նյութերի, տեքստիլ, սննդի, թեթև արդյուն-
բերության և այլն։ Վերջին տարիների ըն-
թացքում ռեսպուբլիկայում կառուցվեցին և
կառուցվում են քիմիական պարարտանյու-
թերի, ավտոդողերի, կաբելի, էլեկտրալամ-
պերի, ռադիոսարքերի, ժամացույցի, ապա-
կու և այլ գործարաններ։ Տարեց-տարի ա-
ճում է տուֆի, պեմզայի, ցեմենտի, կրի,
կղմինդրի, աղյուսի և այլ շինանյութերի ար-
տադրությունը , որոնք հսկայական նշանա-
կություն ունեն ռեսպուբլիկայում ծավալվող
շինարարության համար։
Հնգամյա պլանով տեղական արդյունաբե-
րության մինիստրության ձեռնարկություն-
ների համախառն արտադրանքի ծա-
վալը 1950 թվին պետք է հասցվեր 50
միլիոն ռուբլու, բայց արդեն 1948 թվին
այդ մակարդակը գերազանցվեց և ար-
տադրանքի թողարկման պլանը հասցվեց 57
միլիոն ռուբլու։ Թեթև արդյունաբերության
զարգացման բուռն տեմպերի մասին է վը-
կայում այն, որ 1950 թվին ռեսպուբլիկայի



տեքստիլ գործարանները թողարկելու են
բամբակեղեն գործվածքներ 44 միլիոն 800
հազար մետր, մետաքսեղեն գործվածքներ 2
միլիոն 600 հազար մետր, բրդեղեն գործ-
վածքներ 400 հազար մետր։ Հնգամյակի
վերջում տեքստիլ արդյունաբերության գոր-
ծարանները բնակչությանը տալու են սպի-
տակեղենի և հագուստի գործվածքների բո-
լոր հիմնական տեսակները։ Տեղական ար-
դյունաբերությունը և արհեստագործական
կոոպերացիան 1950 թվին պետք է թողար-
կեն 160 միլիոն ռուբլու արտադրանք։ Նը-
րանց արտադրանքը երրորդ հնգամյակի
համեմատությամբ աճելու է 6 անգամ։ Նըշ-
ված փաստերը և շատ ուրիշ փաստեր ցույց
են տալիս, որ ռեսպուբլիկայում ծանր ար-
դյունաբերության հիմքի վրա զարգանում է
թեթև արդյունաբերությունը, աճում է նրա
արտադրանքը։
Խոշոր ծավալ է ստացել կապիտալ շինա-
րարությունը։ 1949 թվի երրորդ եռամսյա-
կում ռեսպուբլիկայում կատարվող կապիտալ
աշխատանքների ծավալը, 1948 թվի երրորդ
եռամսյակի համեմատությամբ, կազմել է
145 տոկոս։
Ռեսպուբլիկայի արդյունաբերության աշ-
խատողները եռամսյակ առ եռամսյակ

բարձրացնում են աշխատանքի արտադրողա-
կանությունը, լավացնում են արտադրանքի
որակը, իջեցնում են արտադրանքի մեկ միա-
վորի համար հումքի նյութերի, վառելանյու-
թի և էլեկտրաէներգիայի ծախսը, հաջողու-
թյամբ կատարում են ինքնարժեքի իջեցման
պլանը, բարձրացնում են աշխատանքի կուլ-
տուրան։ Ռեսպուբլիկայում արտապլանային
սոցիալիստական կուտակումների համար
անցյալ տարվա ծավալված համաժողովրդա-
կան հայրենասիրական շարժումը տվեց իր
հրաշալի արդյունքները։

Սովետական կարգերի 29 տարիների ըն-
թացքում խոշոր չափով զարգացավ նաև մեր
ռեսպուբլիկայի գյուղատնտեսությունը։ Բազ-
մապատիկ անգամ ընդարձակվեցին ցան-
քատարածությունները, բարձրացավ բերքա-
տվությունը, զարգացավ հանրային անաս-
նաբուծությունը, այդ հիման վրա բարձրա-
ցավ կոլխոզային գյուղացիության նյութա-
կան և կուլտուրական մակարդակը։

Ղեկավարվելով ՀամԿ(բ)Պ Կենտկոմի Փե-
տրրվարյան պլենումի պատմական որոշու-
մով, կոլխոզներում լայնորեն կիրառելով սո-
վետական առաջավոր ագրոտեխնիկան և
բարելավելով աշխատանքի կազմակերպումը,
մեր ռեսպուբլիկայի կոլխոզային աշխատա-



վորությունը հետպատերազմյան ժամանա-
կաշրջանում ձեռք բերեց նոր, խոշոր հաջո-
ղություններ։ Այդ տարիները հանդիսացան
սոցիալիստական գյուղատնտեսության հե-
տագա վերելքի տարիներ։ Մեր ռեսպուբլի-
կայում 1948 թվին գյուղատնտեսական կուլ-
տուրաների ցանքատարածությունը, 1947
թվի համեմատությամբ, ավելացավ 6.800
հեկտարով, իսկ 1919 թվի համեմատությամբ
նա աճել է 5,6 անգամ։ Այդ թվում հացահա-
տիկինը ավելի քան 4,2 անգամ, բամբակինը
25 անգամ, ծխախոտինը 161 անգամ, բան-
ջարանոցային կուլտուրաներինը ու կարտո-
ֆիլինը ավելի քան 13 անգամ, պտղատու
այգիներինը (1945 թվականի տվյալնե-
րով) ավելի քան 12 անգամ, խաղողինը
(1946 թվի տվյալներով) 3,2 անգամ։

Մեր ռեսպուբլիկան 1948 թվին կատարեց
տեխնիկական կուլտուրաների ցանքատարա-
ծությունների ընդարձակման համար հնգա-
մյա պլանով նախատեսած առաջադրանքը։

Անցյալ տարի ծխախոտի ցանքատարա-
ծությունը կազմեց 10 հազար հեկտար, շա-
քարի ճակնդեղինը՝ 4 հազար հեկտար, բամ-
բակինը՝ 15 հազար հեկտար։ Լայնորեն կի-
րառելով ագրոտեխնիկան և գյուղատնտեսու-

մեր ռեսպուբ-
թյան առաջավորների փորձը
լիկայի կոլխոզները հարուստ բերք ստացան։
Նախասովետական ժամանակաշրջանի հետ
համեմատած եռապատկվեց հացահատիկա-
յին կուլտուրաների բերքատվությունը։ Ռես-
պուբլիկայի կոլխոզները անցած տարի պե-
տությանը ավելի շատ գյուղատնտեսական
մթերքներ հանձնեցին, քան 1947 թվին, հա-
ցահատիկ հանձնվեց 300 հազար փութ ավե-
լի, բամբակ՝ 63 հազար 200 ցենտներ, խա-
ղող՝ 85 հազար 400 ցենտներ, ծխախոտ
1.800 ցենտներ, անասնաբուծության մը-
թերքներ 55 հազար 291 ցենտներ, կարտո-
ֆիլ 32 հազար 350 ցենտներ ավելի։ Ընթա-
ցիկ տարվա հոկտեմբերի 10-ին ռեսպուբլի-
կայում ավարտվեց հացահատիկային կուլ-
տուրաների բերքահավաքը և մեծ հաջողու-
թյամբ, ժամկետից շուտ, կատարվեց հարա-
զատ պետությանը գյուղատնտեսական մը-
թերքներ հանձնելու պլանը։

Ռեսպուբլիկայի շատ շրջաններ հացահա-
տիկի բարձր բերք ստացան։ Ստեփանավա-
նի, Կալինինոյի, Կիրովականի, Դիլիջանի,
Շամշադինի շրջանները գերազանցեցին բեր-
քատվության առաջադրանքները։ Ստեփա-



նավանի շրջանի Գյուլագարակ, Գյառգյառ,
Վարդաբլուր, Հոբարձի, Լեջան գյուղերի
կոլխոզները յուրաքանչյուր հեկտարից այս
տարի ստացան 17 ցենտներից ավելի հա-
ցահատիկի բերք։

Փայլուն հաջողություններ ձեռք բերին ռես-
պուբլիկայի բամբակագործ կոլխոզնիկներն
ու կոլխոզնիկուհիները։ Ծավալելով նախա-
հոկտեմբերյան սոցիալիստական մրցությու-
նը նրանք ժամկետից շուտ կատարեցին պե-
տությանը բամբակի հումք հանձնելու տարե-
կան պլանը։ Մինչև նոյեմբերի 21-ը բամբա-
կագործական կոլխոզները հումքի հանձնման
պլանը կատարեցին 116,85 տոկոսով։ Մեծ
հաջողությունների հասան հատկապես Հոկ-
տեմբերյանի, Արտաշատի և Վեդու շրջաննե-
րի բամբակագործները։ Այդ շրջանների կոլ-
խոզները պետությանը պլանից դուրս հանձ-
նեցին մի քանի հազար տոննա բամբակ։
Հոկտեմբերյանի շրջանի Նորապատ գյու-
ղի կոլխոզը բամբակի հումքի հանձ-
նըման պլանը կատարեց 175 տոկոսով։
Բամբակաշատի կոլխոզը պետությանը պլա-
նից դուրս հանձնեց 345 տոննա բամբակ։
Հարյուրավոր բամբակագործական բրիգա-
դաներ և օղակներ աճեցրել են բամբակի ռե-
կորդային բերք։ Հոկտեմբերյանի շրջանում

օղակավարուհիներ Ա. Սիմոնյանը, Հ. Բաղդասարյանը, Ա. Բադալյանը, Ռ. Մինասյանը, Հ. Մխիթարյանը, Ն. Մելքոնյանը, Ս. Հակոբյանը յուրաքանչյուր հեկտարից հավաքել են 60—70 ցենտներ բամբակի հումք։ Զգալի հաջողություններ են ձեռք բերել նաև ռեսպուբլիկայի ծխախոտագործ կոլխոզները։ Նրանք ծխախոտի տերևաքաղի պլանը կատարել են 110 տոկոսով։

Կենսագործելով հանրային անասնաբուծության զարգացման եռամյա պլանի մասին ՍՍՌՄ Մինիստրների Սովետի և ՀամԿ(բ)Պ Կենտկոմի որոշումը ռեսպուբլիկայի կոլխոզային գյուղացիությունը աչքի ընկնող հաջողություններ է ձեռք բերել անասնաբուծության զարգացման բնագավառում։ Կազմակերպված են անասնապահական բազմաթիվ նոր ֆերմաներ, կոմպլեկտավորվում է գոյություն ունեցող ֆերմաների անասունների գլխաքանակը։

Ռեսպուբլիկայի կոլխոզների տնտեսական հաջողությունները և ամրապնդումը ապահովեցին կոլխոզնիկների նյութական բարեկեցության սիստեմատիկ վերելքը։ Հայաստանի գյուղատնտեսության զարգացման համար նոր հեռանկարներ են բացվում դաշտապաշտպան անտառաշերտերի ստեղծումով։



***

Սոցիալիստական էկոնոմիկայի հարաճուն վերելքին զուգընթաց բարձրացել է նաև ժողովրդի կյանքի նյութական ու կուլտուրական մակարդակը, լայն հնարավորություններ են ստեղծվել կուլտուրայի, արվեստի, գիտության, ժողովրդական կրթության և առողջապահության զարգացման համար, քաղաքների և գյուղերի բարեկարգման համար։

Սովետական Հայաստանում անցած 29 տարիների ընթացքում տեղի ունեցավ իսկական կուլտուրական ռևոլուցիա. կիսախավար, անգրագիտության երկրից Հայկական ռեսպուբլիկան վերածվեց համատարած գրագիտության երկրի։ Եթե նախասովետական Հայաստանում ազգաբնակչության 90 տոկոսը անգրագետ էր, ապա այժմ մեր ռեսպուբլիկան ծածկված է միջնակարգ և ոչ լրիվ միջնակարգ դպրոցների, տեխնիկումների և բարձրագույն ուսումնական հաստատությունների, ակումբների և գրադարանների, թատրոնների և կինոների խիտ ցանցով։

Եթե 1918—19 թվերի ուսումնական տարում Հայաստանում կար ընդամենը 18 հազար աշակերտ, ապա 1948—49 ուսումնական

տարում ռեսպուբլիկայի 1.193 դպրոցներում
սովորում էին 302 հազար աշակերտ, իսկ 53
տեխնիկումներում 9.283 ուսանող։ Քաղաք-
ներում լրիվին իրագործված է յոթնամյա
պարտադիր ուսուցումը և բոլոր պայմաննե-
րը նախապատրաստված են գյուղերում յոթ-
նամյա պարտադիր ուսուցման անցնելու հա-
մար։

Նախառևոլուցիոն Հայաստանում չկար ոչ
մի բարձրագույն դպրոց, այժմ մեր ռեսպուբ-
լիկայում գործում են 14 ստացիոնար և երեք
հեռակա բարձրագույն ուսումնական հաս-
տատություններ։

Անցած 29 տարիների ընթացքում ռես-
պուբլիկայի բարձրագույն ուսումնական
հաստատությունները մեր երկրին տվել են
մի քանի տասնյակ հազար մասնագետներ։
Բավական է նշել, որ միայն 1940—48 թվե-
րի ընթացքում ռեսպուբլիկայի բարձրագույն
ուսումնական հաստատությունները տվել են
6.610 մասնագետներ։

Տարեց տարի ավելի մեծ ուշադրություն է
դարձվում աշխատավորների կյանքի կուլ-
տուրական-կենցաղային մակարդակի բարձ-
րացմանը։ Աճել է հիվանդանոցների, կլինի-
կաների ու ծննդատների ցանցը. ավելանում



է ամբուլատորիաների, պոլիկլինիկաների
թիվը։

Մեր ռեսպուբլիկայում մեծ թափ է ստա-
ցել գիտական և տեխնիկական մտքի զար-
գացումը։ Հայրենական պատերազմի տարի-
ներին ստեղծված Հայկական ՍՍՌ Գիտու-
թյունների Ակադեմիան դարձել է սովետա-
կան առաջավոր գիտության կարևոր օղակ-
ներից մեկը և ռեսպուբլիկայի գիտական
մտքի կենտրոնը։ Նա այժմ իր կազմում ունի
ավելի քան 36 ինստիտուտներ և տարբեր
գիտահետազոտական հաստատություններ։
Գիտությունների Ակադեմիան իր շուրջն է
համախմբել մի քանի հարյուր գիտական
աշխատողներ, որոնք գիտական խոշոր աշ-
խատանք են կատարում ֆիզիկո-մաթեմատի-
կական, քիմիական, տեխնիկական, գյուղա-
տնտեսական գիտությունների, հայ ժողո-
վրրդի կուլտուրայի և պատմության և գի-
տական այլ պրոբլեմների մշակման բնագա-
վառում։ Բավական է հիշատակել ակադեմի-
կոսներ Ալիխանյան եղբայրների կատարած
խոշոր աշխատանքը ֆիզիկական գիտու-
թյունների բնագավառում, ակադեմի-
կոս Վ. Համբարձումյանի՝ աստրոֆիզիկայի
բնագավառում կատարած աչքի ընկնող աշ-
խատանքը, որոնց համար հեղինակները ար-

ժանացան Ստալինյան մրցանակի: Ստալին-
յան մրցանակի են արժանացել նաև ակադե-
միկոսներ Մալխասյանը և պրոֆեսոր Գրո-
բովսկին:

Սովետական իշխանության տարիներին
բուռն թափով զարգացավ հայ ժողովրդի
գրականությունը: Սնվելով ժողովրդական
ստեղծագործության անսպառ ակունքներից,
սովետահայ գրականությունը իր իդեակա-
նությամբ և գեղարվեստական արժանիքնե-
րով մի դարաշրջան է կազմում հայ գրակա-
նության պատմության մեջ:

Չտեսնված ծաղկման հասավ և բարգավա-
ճեց հայ երաժշտական կուլտուրան, թատ-
րական կուլտուրան, նկարչությունը, քան-
դակագործությունը: Աճել են ստեղծագործա-
կան բազմաթիվ տաղանդավոր երիտասարդ
կադրեր:

Անցած 29 տարիների ընթացքում ամբող-
ջովին կերպարանափոխվեց ռեսպուբլիկայի
քաղաքների և գյուղերի տեսքը: Սովետական
կառավարության, բոլշևիկների պարտիայի և
անձամբ ընկեր Ստալինի ամենօրյա հոգա-
տարության շնորհիվ տարեց տարի ավելի ու
ավելի խոշոր միջոցներ են տրամադրվում
մեր քաղաքների, ավանների ու գյուղերի
բարեկարգման, աշխատավորների կյանքի



պայմանների է՛լ ավելի բարելավելու համար:
Դրա փայլուն ապացույցն է հանդիսանում
մեր ռեսպուբլիկայի մայրաքաղաք Երևանը:
Սովետական իշխանության տարիներին կա-
ռուցվել է ավելի քան մեկ միլիոն քառակու-
սի մետր բնակելի տարածություն: Միայն
վերջին 10 տարվա ընթացքում շահագործ-
ման է հանձնվել ավելի քան 600 հազար
քառ. մետր բնակելի տարածություն:

Բնակարանային շինարարության ծրագրի
իրագործումը մեր ռեսպուբլիկայի մայրաքա-
ղաք Երևանը դարձրեց Սովետական Միու-
թյան բարեկարգ և գեղեցիկ քաղաքներից
մեկը: Նեղ, կեղտոտ փողոցների, կավաշեն
տների տեղ կառուցվեցին բազմաթիվ գեղե-
ցիկ բնակելի շենքեր: Ճարտարապետորեն
ձևավորվում են հրապարակներն ու փողոց-
ները, բարելավվում են սանիտարական պայ-
մանները, ստեղծվում են բազմաթիվ պու-
րակներ ու այգիներ, ասֆալտապատվում են
փողոցները, բազմաթիվ ուղղություններով
շարժվում են տրամվայները, ավտոբուսները,
տրոլեյբուսները, մայրաքաղաքը ծածկվում է
կանաչով և ողողված է էլեկտրական պայ-
ծառ լույսով:

Գնալով ավելի լայն թափ ու ծավալ է ըն-
դունում շինարարությունն ու բարեկարգման

աշխատանքը կոլխոզային գյուղում։ Միայն վերջին երեք տարվա ընթացքում ռեսպուբլիկայի գյուղերում կառուցվել են ավելի քան 6.300 բնակարան, 138 ակումբ, տասնյակ դպրոցներ և էլեկտրակայաններ, հասարակական և տնտեսական օգտագործման բազմաթիվ շենքեր, այս տարի կառուցվել են տասներկու հազար անհատական բնակարաններ, 116 ակումբ, դպրոցներ, բաղնիքներ, հիվանդանոցներ։

Հիմնովին բարեկարգվում են մեր շրջանային կենտրոնները։ Կենսագործելով Հայաստանի Կ(բ)Պ 14-րդ համագումարի որոշումները, ռեսպուբլիկայի բոլոր շրջանները լայն կերպով ծավալել են էլեկտրիֆիկացման աշխատանքը։ Արդեն էլեկտրիֆիկացված է ավելի քան 400 կոլխոզ, էլեկտրաէներգիա են ստանում ավելի քան 50 սովխոզ և ՄՏ կայան։ Մինչև ստալինյան հնգամյակի վերջը ավելի քան 740 կոլխոզ պետք է ստանան էլեկտրական լույս, կառուցվելու են 25 շրջանային և ենթաշրջանային էլեկտրակայաններ, մոտ 700 տրանսֆորմատորային կայան։

Ռեսպուբլիկայի քաղաքները, ավանները և գյուղերը, կոլխոզներն ու սովխոզները պատվել են հեռախոսի և ռադիոյի լայն ցանցով։



Ռադիոն արմատավորվել է աշխատավորների կենցաղի մեջ։ Այժմ մեր ռեսպուբլիկայում ռադիոֆիկացված է 421 բնակավայր, գործում են ավելի քան 44.300 ռադիո կետեր, հազարավոր ռադիո ընդունիչներ։ Առաջիկա երկու տարում ռադիոֆիկացվելու է ռեսպուբլիկայի 709 բնակավայր։ Սովետական Հայաստանը պատված է կուլտուր-լուսավորական հիմնարկների խիտ ցանցով, գյուղերում, ավաններում և քաղաքներում գործում են հազարավոր ակումբներ, գրադարաններ, կուլտուրայի տներ, թատրոններ, կինոներ և այլն։

Հայաստանի պարտիական կազմակերպությունները, կենսագործելով իդեոլոգիական աշխատանքներն ուժեղացնելու վերաբերյալ ՀԿ(բ)Պ Կենտկոմի որոշումները, ձեռք բերին զգալի հաջողություններ։ Լուրջ պայքար ծավալվեց պատմության, գրականության, փիլիսոփայության և կուլտուրայի բնագավառներում անցյալի իդեալականացման երևույթների, բուրժուական նացիոնալիզմի ռեցիդիվների ու մնացորդների և ամեն տեսակ խեղաթյուրումների դեմ։ Կադրերին զինելով մարքսիզմի-լենինիզմի հզոր զենքով, ուժեղացնելով աշխատանքը իդեոլոգիական ճակատում, արմատախիլ արվեցին բուրժուա-

կան իդեոլոգիայի բոլոր և ամեն տեսակի
արտահայտությունները, որոնք լուրջ վնաս
էին հասցնում աշխատավորների կոմունիս-
տական դաստիարակության գործին։

Տարեց տարի բարելավվում է աշխատավո-
րության նյութական բարեկեցությունը, բարձ-
րանում է բանվորների և ծառայողների ռեալ
աշխատավարձը, կոլխոզներում աճում է
աշխօրերի դիմաց տրվող մթերքների քանա-
կը։ Դրամական ռեֆորմի կիրառումից. մա-
տակարարման քարտային սիստեմը վերաց-
նելուց և արդյունաբերական ու պարենային
մթերքների պետական գները իջեցնելուց հե-
տո, մեր ռեսպուբլիկայում խոշոր չափով ա-
ճել է ապրանքաշրջանառությունը, բարելավ-
վել է քաղաքների և գյուղերի բնակչության
պարենային և արդյունաբերական ապրանք-
ների մատակարարման վիճակը։

Ջերմ հոգատարությամբ են շրջապատված
արտասահմանից Սովետական Հայաստան
վերադարձած հայ աշխատավորները։ Պե-
տության միջոցներով նրանց համար կառուց-
վել են ավելի քան 1.300 բնակարաններ. խո-
շոր գումարներ է տրամադրվել նրանց ան-
հատական բնակարանային շինարարության
համար։ Մեծ ուշադրություն է դարձվում նոր
կառուցված թաղամասերի բարեկարգմանը։



կառուցվել են դպրոցների, ակումբների,
գրադարանների, մանկամսուրների նոր շեն-
քեր։ Բարեկարգվել են փողոցները, անց են
կացվել տրամվայի նոր գծեր։ Հայրենադարձ
հայերը ակտիվ կերպով մասնակցում են
ստալինյան հնգամյա պլանի կատարմանը։

Արդյունաբերության, գյուղատնտեսու-
թյան, կուլտուրայի և աշխատավորության
նյութական բարեկեցության բնագավառում
ձեռք բերած այս փայլուն հաղթանակները
վառ կերպով ապացուցում են Հոկտեմբեր-
յան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի ծր-
նունդ սովետական կարգերի, տնտեսության
սոցիալիստական սիստեմի առավելություն-
ները և նրա գերազանցությունը կապիտա-
լիստական սիստեմի նկատմամբ։

***

Հայաստանում Սովետական իշխանության
հաստատման 29-րդ տարեդարձը ռեսպուբ-
լիկայի աշխատավորությունը դիմավորում է
այն պայմաններում, երբ մեր Սովետական
Սոցիալիստական հայրենիքն իր ամբողջ
պատմության ընթացքում երբեք չի ունեցել
այսքան արդարացիորեն և լավ լուծված պե-
տական սահմաններ, երբ մեր հայրենիքը
դեռ երբեք շրջապատված չի եղել մեր պե-
տության նկատմամբ այնքան բարեկամ հա-

ընաև երկրներով, ինչպես այժմ, երբ գնալով խաղաղության ուժերն աճում և ամրապնդվում են, երբ դեմոկրատիայի և սոցիալիզմի ուժերը հաղթանակում են։

Արևմուտքում Սովետական Միության հետ այժմ սահմանակից են սոցիալիզմի ուղու վրա կանգնած Լեհաստանը, Չեխոսլովակիան, Հունգարիան, Ռումինիան, Բուլղարիան։ Այդ երկրների ժողովուրդները հավիտենական և ամուր բարեկամական կապերով կապված են Սովետական Միության ժողովուրդների հետ։ Արևելքում Սովետական Միության հետ սահմանակից են մեզ հետ բարեկամությամբ զոդված Մոնղոլական ժողովրդական ռեսպուբլիկան, Կորեական ժողովրդական դեմոկրատական ռեսպուբլիկան և Չինական ժողովրդական ռեսպուբլիկան։

Սովետական Միության տնտեսության և կուլտուրայի հզոր վերելքի, միջազգային արենայում նրա հեղինակության անչափ բարձրացման հետ միասին, չտեսնված կերպով ամրապնդվել են մեր սոցիալիստական պետության սահմանները։

Սովետական Միությունը հանդիսանում է ամբողջ աշխարհում խաղաղության, դեմոկրատիայի և սոցիալիզմի համար պայքարող



ժողովուրդների ավանգարդը և ամուր հենարանը։

Սովետական Միությունը անշեղորեն կիրառում է ժողովուրդների խաղաղության, բարեկամության և եղբայրական համագործակցության քաղաքականություն։ ՍՍՌՄ-ի խաղաղասիրական քաղաքականությունը բխում է Սովետական Սոցիալիստական պետության բուն էությունից, սովետական ժողովրդի արմատական շահերից, մեր երկրում կոմունիզմ կառուցելու շահերից։

Սովետական Միության ժողովուրդները, այդ թվում նաև հայ ժողովուրդը, չեն խնայում իրենց ուժերը խաղաղության կողմնակիցների շարքերը ամրապնդելու, ընդլայնելու, նոր պատերազմի հրձիգների պլանները վիժեցնելու համար։

Գնալով ավելի է ընդլայնվում և ամրապնդվում խաղաղության կողմնակիցների շարքերը։ Սոցիալիզմի, խաղաղության և դեմոկրատիայի լագերը դարձել է հզոր ուժ միջազգային ռեակցիոն լագերի դեմ հանդիման։ Այս տարի Փարիզում և Պրագայում տեղի ունեցած խաղաղության Համաշխարհային կոնգրեսը, Մոսկվայի խաղաղության կողմնակիցների Համամիութենական կոնֆերանսը, ինչպես նաև զանազան երկրնե-

րում տեղի ունեցած խաղաղության ազգային կոնֆերանսները ցույց տվին խաղաղության միջազգային շարժման մեծությունը, նրա հզոր ուժը։

Խաղաղության համար մղվող պայքարում ակտիվ դեր են խաղում Պրոֆմիությունների համաշխարհային ֆեդերացիան, որը միավորում է ավելի քան 70 միլիոն աշխատավորներ, Կանանց միջազգային դեմոկրատական ֆեդերացիան, որն ունի 80 միլիոն անդամ, Դեմոկրատական երիտասարդության համաշխարհային ֆեդերացիան, որը միավորում է ավելի քան 60 միլիոն երիտասարդ, Ուսանողների միջազգային միությունը, որն իր կազմակերպությունները ունի 54 երկրներում և խաղաղության կողմնակիցներին միավորող շատ այլ դեմոկրատական կազմակերպություններ։ Սովետական Միությունը, ժողովրդական դեմոկրատիայի երկրները և ամբողջ աշխարհի աշխատավոր ժողովուրդները պայքարում են կայուն, տևական դեմոկրատական խաղաղության համար, մինչդեռ իմպերիալիստները, ԱՄՆ-ի գլխավորությամբ, նախապատրաստում են նոր պատերազմ։

Արևմտյան Եվրոպայի երկրներին «Մար-



շալլի պլանով» այսպես կոչված «օգնության» ցույց տալու նպատակը այդ երկրների գաղութացումը և արագ միլիտարիզացումն է, որի համար ԱՄՆ-ը տարեկան բաց է թողնում մոտ 4 միլիարդ դոլլար, բացի այդ մարշալլացված հիմնական երկրները ամեն տարի սպառազինության վրա ծախսում են ավելի քան 6 միլիարդ դոլլար։

Նոր պատերազմի ամերիկյան հրձիգները թույլ ներվեր ունեցող մարդկանց վախեցնելու համար գործի դրին այսպես կոչված ատոմային դիվանագիտությունը։ Իմպերիալիստները ամեն կերպ ձգտում էին ցույց տալ, որ ատոմային զենքի մենաշնորհը պատկանում է Ամերիկայի Միացյալ Նահանգներին։ Սակայն, ՏԱՍՍ-ի այն հաղորդագրությունը, որ Սովետական Միությունը տիրապետել է ատոմային զենքի գաղտնիքին դեռևս 1947 թվից, խոշոր հարված է հանդիսանում պատերազմի հրձիգների պլանները քայքայելու և խաղաղությունը ապահովելու համար։

Սովետական Միության աճման ու վերելքի հետ միասին աճում, ամրապնդվում և հաղթանակում են սոցիալիզմի և դեմոկրատիայի ուժերն ամբողջ աշխարհում։

Սոցիալիզմի և դեմոկրատիայի ուժերի փայլուն հաղթանակ է հանդիսանում ժո-

ռեժիմների
ժողովրդական դեմոկրատական
հաստատումը Եվրոպայի կենտրոնական և
հարավ արևելյան մասում։ Ժողովրդական
դեմոկրատիայի երկրները հաջողությամբ
կենսագործում են իրենց եռամյա և հնգամ-
յա պլանները, հաստատակամորեն առաջ են
շարժվում սոցիալիզմի ուղիով, իրագործում
են իրենց երկրների սոցիալիստական ին-
դուստրացումը, առաջին քայլերն են արել
գյուղատնտեսության սոցիալիստական վե-
րակառուցման ուղղությամբ։ Այդ երկրնե-
րում զարգանում է կուլտուրան, բարձրա-
նում է ժողովրդի կենսամակարդակը։

Տապալվեցին ժողովրդական դեմոկրա-
տական ռեժիմները ներսից պայթեցնելու
իմպերիալիստների ձեռնարկած պլանները։
Ռայկը և նրա գործակիցները բռնվեցին ի-
րենց հանցագործության տեղում և ջախ-
ջախվեցին։ Տիտո-ռանկովիչի ֆաշիստական
կլիկը մերկացված է որպես իմպերիալիզմի
լրտեսական գործակալություն, որը միջազ-
գային իմպերիալիզմի կողմից օգտագործ-
վում է Սովետական Միության և ժողովրդա-
կան դեմոկրատիայի երկրների դեմ թշնա-
մական աշխատանք տանելու համար։

Խաղաղության և դեմոկրատիայի լագերի
հզորացման համար խոշոր նշանակություն



ունի չին մեծ ժողովրդի պատմական հաղ-
թանակը, հաղթանակ, որ հանդիսանում է
մարքսիստական-լենինյան ուսմունքի ամե-
նահաղթ ուժի փայլուն ցուցադրումը։ Ղե-
կավարվելով մարքսիզմ-լենինիզմի ռևոլյու-
ցիոն ուսմունքով, Չինաստանի կոմունիս-
տական պարտիան, իր փորձված ղեկավար
Մաո Ցզե-դունի ղեկավարությամբ համա-
խմբեց ազգի բոլոր հայրենասիրական ու-
ժերը և ապահովեց հաղթանակը։ Չին ժո-
ղովրդի խոշոր հաղթանակը Արևելքի և
ամբողջ աշխարհի գաղութային և կախյալ
երկրների ժողովուրդների ազգային ազա-
տագրական պայքարը բարձրացրեց մի նոր,
ավելի բարձր աստիճանի։

Խաղաղության և դեմոկրատիայի լագերի
հաղթանակ է հանդիսանում Գերմանական
դեմոկրատական խաղաղասեր ռեսպուբլի-
կայի ստեղծումը։ Գերմանական դեմոկրա-
տական ռեսպուբլիկայի պրեզիդենտ պարոն
Վիլհելմ Պիկին և պրեմիեր մինիստր պարոն
Օտտո Գրոտեվոլին ուղղած իր պատմական
ողջույնի մեջ ընկեր Ստալինը գերմանական
դեմոկրատական խաղաղասեր ռեսպուբլի-
կայի ստեղծումը բնութագրեց, որպես շրջա-
դարձային կետ Եվրոպայի պատմության
մեջ։ Սովետական Միության խաղաղասի-

կության քաղաքականության կողքին գերմա-
րական քաղաքականության կողքին գերմա-
նական դեմոկրատական ռեսպուբլիկայի
խաղաղասիրական քաղաքականության առ-
կայության դեպքում, խաղաղության գործը
Եվրոպայում կարելի է համարել ապահով-
ված։

Հսկայական են խաղաղության դեմոկրա-
տիայի և սոցիալիզմի ուժերը։ Բավական է
ասել, որ Չինաստանում, Եվրոպայի ու Ա-
սիայի ժողովրդական դեմոկրատիայի երկըր-
ներում Սովետական Միության հետ միասին
հաշվվում է մոտ 800 միլիոն մարդ, չհաշ-
ված կապիտալիստական երկրների և նը-
րանց գաղութների հարյուր միլիոնավոր աշ-
խատավորները, որոնք կոմունիստական
պարտիայի ղեկավարությամբ պայքարում
են խաղաղության ու դեմոկրատիայի հա-
մար։

Այսպիսով դեմոկրատիայի ու սոցիալիզմի
ուժերը աճում, ամրապնդվում և հաղթանակ
են տանում, իսկ միջազգային ռեակցիայի
ուժերը գնալով թուլանում և պարտություն-
ներ են կրում։

Սովետական Միությունը և ժողովրդական
դեմոկրատիայի երկրները տնտեսական և
կուլտուրական անշեղ վերելք են ապրում,
մինչդեռ Ամերիկայի Միացյալ Նահանգ-



ները, Անգլիան գնալով ավելի են խորանում
տնտեսական ճգնաժամի մեջ։

Տապալված «Մարշալլի պլանը», չփրկելով
ԱՄՆ-ի էկոնոմիկան վերահաս ճգնաժամից,
միաժամանակ է՛լ ավելի քայքայման հաս-
ցըրեց մարշալլացված երկրների էկոնոմի-
կան։ Ամերիկայի Միացյալ Նահանգներում
և կապիտալիստական մյուս երկրներում
գնալով աճում է գործազրկությունը, ուժե-
ղանում է մասսաների աղքատությունը և
թշվառությունը։ Բավական է ասել, որ ներ-
կայումս ԱՄՆ-ում գործազուրկների և կի-
սագործազուրկների թիվը կազմում է 14
միլիոն մարդ, իսկ կապիտալիստական բո-
լոր երկրներում առնվազն 40 միլիոն մարդ։

Իմպերիալիզմի լագերի թուլությունը, սո-
ցիալիզմի և դեմոկրատիայի ուժերի աճը
ցույց են տալիս, որ մոտալուտ է հա-
մաշխարհային կապիտալիզմի կործա-
նումը, որ պատմական զարգացման
բոլոր ուղիները տանում են դեպի կո-
մունիզմ։ Հոկտեմբերյան ռևոլյուցիա-
յի 32-րդ տարեդարձի մասին տված իր
զեկուցման մեջ ընկեր Մալենկովը ասաց.
«Ի՞նչ է վկայում պատմական փորձը։ Այն
վկայում է, որ իմպերիալիստների կողմից
հրահրված առաջին համաշխարհային պա

տերազմը հանգեցրեց Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի հաղթանակին մեր երկրում։

Այնուհետև պատմական փորձը վկայում է, որ իմպերիալիստների կողմից հրահրված երկրորդ համաշխարհային պատերազմը հանգեցրեց կենտրոնական և հարավ-արևելյան Եվրոպայի մի շարք երկրներում ժողովրդա-դեմոկրատական ռեժիմների հաստատմանը, հանգեցրեց Չին մեծ ժողովրդի հաղթանակին։

Կարո՞ղ է արդյոք որևէ տարակույս լինել, որ եթե իմպերիալիստները հրահրեն երրորդ համաշխարհային պատերազմ, ապա այդ պատերազմը գերեզման կհանդիսանա արդեն ոչ թե առանձին կապիտալիստական պետությունների համար, այլ համաշխարհային ամբողջ կապիտալիզմի համար»։

***

Տոնելով Հայաստանում Սովետական կարգերի հաստատման 29-րդ տարեդարձը, հայ աշխատավորությունը թևակոխում է իր վերածնման 30-րդ տարին։ Դրա համար էլ Հայաստանի աշխատավորությունը իր ազատարար մեծ Ստալինին հաստատ խոսք է տալիս՝ առաջիկա 30-րդ տարեդարձը դիմավորել ավելի մեծ հաջողություններով։ Նա



խոսք է տալիս իր սոցիալիստական ռեսպուբլիկայի հնգամյա պլանը կատարել ժամկետից շուտ, ավելի զարգացնել իր արդյունաբերությունը, գյուղատնտեսությունը և կուլտուրան, չխնայել իր ուժերն ու եռանդը Սովետական Հայրենիքի հզորության բարձրացման համար։ Հայաստանի աշխատավորությունը խոսք է տալիս է՛լ ավելի սերտորեն համախմբվել բոլշևիկների մեծ պարտիայի և սովետական կառավարության շուրջը, ժողովուրդների հանճարեղ առաջնորդ մեծ Ստալինի շուրջը։

Սովետական Հայաստանի աշխատավորությունը, ՍՍՌՄ ժողովուրդների եղբայրական միասնական ընտանիքում, նրա հետ ամուր ձեռք ձեռքի տված, Լենինի դրոշի ներքո, կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ, մեծ Ստալինի՝ հայ ժողովրդի մեծագույն բարեկամի և ազատարարի գլխավորությամբ հաստատուն քայլերով ընթանում է դեպի կոմունիզմ։

—○—

# ՍՈՑԻԱԼԻԶՄԻ ԵՐԿՐԻ ԿՈՆՍՏԻՏՈՒՑԻԱՆ

## (Նյութեր զրույցների համար)

Տասներեք տարի առաջ, 1936 թվականի
դեկտեմբերի 5-ին, Սովետների Համամիու-
թենական 8-րդ Արտակարգ համագումարը
ընդունեց ՍՍՌՄ նոր Կոնստիտուցիան։ Սո-
վետական ժողովուրդը այդ Կոնստիտու-
ցիան կոչեց Ստալինյան Կոնստիտուցիա՝
նրա ստեղծողի, մեծ Ստալինի անունով։
ՍՍՌՄ ժողովուրդների համար Ստալին-
յան Կոնստիտուցիան այս բոլոր տարինե-
րին հանդիսացել է մի մարտական դրոշ,
որի ներքո նրանք մեծ հաղթանակներ ձեռք
բերին մեր հայրենիքի ազատության, ան-
կախության և հետագա ծաղկման համար
մղվող պայքարում։ Ստալինյան Կոնստի-
տուցիան սովետական մարդկանց ոգեշնչում
է նոր, հերոսական գործերի, ի փառս սո-
ցիալիստական Հայրենիքի։

***

Մեծ
Հոկտեմբերյան Սոցիալիստական



ռևոլյուցիայի առաջին իսկ օրերից բոլշևիկ-
յան պարտիան պետական իշխանության
նոր մարմինների՝ Սովետների միջոցով ըս-
կսեց հաստատապես և հետևողականորեն
քաղաքական և տնտեսական արմատական
վերակառուցումներ կատարել երկրում, ո-
րոնք նպատակ ունեին զարգացնելու և ամ-
րացնելու նոր պետականությունը և նոր հա-
սարակակարգը։

Արդեն Սովետների համառուսաստանյան
2-րդ համագումարում 1917 թվի հոկտեմբե-
րի 26 (նոյեմբերի 8)-ին ընդունված առա-
ջին դեկրետները (օրենքներ) արտացոլեցին
այն խորը բեկումը, որ տեղի էր ունեցել մեր
երկրի կյանքում Հոկտեմբերյան Սոցիալիս-
տական Մեծ ռևոլյուցիայի հետևանքով։

Համագումարը օրենսդրականորեն վավե-
րացրեց Հոկտեմբերյան Սոցիալիստական
Մեծ ռևոլյուցիայի հաղթանակը, որը Սովետ-
ները դարձրեց պետական իշխանության օր-
գաններ։ Համագումարն ընդունեց խաղա-
ղության մասին և հողի մասին դեկրետները։

Սովետական կառավարության ընդունած
առաջին դեկրետներով սկսեց ստեղծվել սո-
վետական ապարատը, ստեղծվեցին նոր ժո-
ղովրդական դատարանները, Կարմիր Բա-
նակը։

Հրապարակվեցին դեկրետներ դասերի վերացման մասին, ազգային և դավանական սահմանափակումների վերացման մասին, եկեղեցին պետությունից և դպրոցը եկեղեցուց անջատելու մասին, կանանց և տղամարդկանց իրավահավասարության մասին։

Այսպիսով, Սովետական կառավարության առաջին իսկ դեկրետներով օրենսդրականորեն վավերացվեց նոր հասարակական և պետական կարգը, որ մեր երկրում հաստատվել էր Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի հետևանքով։

Այս բոլոր դեկրետները հետագայում արտացոլում գտան 1918 թվականի հուլիսի 10-ին Սովետների Համառուսաստանյան 5-րդ համագումարի ընդունած ՌՍՖՍՌ Կոնստիտուցիայում (Հիմնական օրենքը)։ Դա առաջին Սովետական Կոնստիտուցիան էր։ Այդ կոնստիտուցիայի ստեղծողներն էին Լենինը և Ստալինը։

Լենինի և Ստալինի նախաձեռնությամբ 1922 թվականի վերջերին ստեղծվեց սովետական ժողովուրդների կամավոր պետական միավորումը՝ Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաների Միությունը։

Սովետների Համամիութենական 1-ին համագումարից անմիջապես հետո ընկեր



Ստալինի ղեկավարությամբ սկսվեց ՍՍՌՄ առաջին Կոնստիտուցիայի մշակումը։ 1924 թվականի հունվարի 31-ին Սովետների Համամիութենական 2-րդ համագումարն ընդունեց Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաների Միության այդ առաջին Կոնստիտուցիան։

ՍՍՌ Միության առաջին Կոնստիտուցիան համաշխարհային պատմական նշանակության փաստաթուղթ հանդիսացավ։ Նա հաստատուն հիմք ստեղծեց մեր երկրի բոլոր ժողովուրդների սերտ և բարեկամական համագործակցության համար՝ միասնական սովետական պետության շրջանակներում։ Նա դարձավ ՍՍՌՄ աշխատավորության հզոր զենքը սովետական կարգերի ամրապնդման, սոցիալիստական հասարակության կառուցման պայքարում։

ՍՍՌ Միության առաջին Կոնստիտուցիան ընդունվելուց հետո անցած ընդամենը 10—12 տարվա ընթացքում վիթխարի փոփոխություններ տեղի ունեցան մեր երկրի տնտեսական և քաղաքական կյանքում։ Արմատապես փոխվեց մեր երկրի ողջ կերպարանքը։ Արդեն 1936 թվականին սոցիալիստական ինդուստրիան, արդյունաբերական արտադրանքի ծավալի տեսակետից, ավելի քան

յոթ անգամ գերազանցում էր ցարական ժամանակի ինդուստրիային։ ՍՍՌՄ ամբողջ ժողովրդական տնտեսության ընդհանուր արտադրանքում արդյունաբերական արտադրանքի տեսակարար կշիռը 1935 թվականին արդեն կազմում էր 75,6 տոկոսը։ Այսպիսով մեր երկիրը ագրարայինից վեր ածվեց ինդուստրիալ երկրի։

Անճանաչելիորեն փոխվեց նաև գյուղատնտեսությունը։ 1936 թվականին կոլխոզային ու սովխոզային դաշտերում աշխատում էին ավելի քան 400 հազար տրակտոր, տասնյակ հազարավոր այլ գյուղատնտեսական մեքենաներ։ Համատարած կոլեկտիվացման հիման վրա վերացվեց կուլակությունը որպես դասակարգ։

Մեր երկրում տեղի ունեցած տնտեսական խորը վերակառուցումների համապատասխան փոխվեց նաև սովետական հասարակության դասակարգային կառուցվածքը։ Ընդմիշտ ոչնչացվեց մարդու ձեռքով մարդու շահագործման հնարավորությունը, ոչնչացվեցին բոլոր շահագործող դասակարգերը։ Մնաց բանվոր դասակարգը, մնաց գյուղացիների դասակարգը, մնաց ինտելիգենցիան։

ՍՍՌՄ-ի բանվոր դասակարգը մի բոլորո-



վին նոր՝ շահագործումից ազատագրված դասակարգ է, որը ոչնչացրել է տնտեսության կապիտալիստական սիստեմը, հաստատել է արտադրության գործիքների և միջոցների սոցիալիստական սեփականություն և սովետական հասարակությունը տանում է կոմունիզմի ուղիով։

ՍՍՌՄ-ում աճեց միանգամայն նոր գյուղացիություն, որն ազատագրվել է ամեն տեսակի շահագործումից, որն իր աշխատանքը հիմնում է ոչ թե անհատական աշխատանքի ու հետամնաց տեխնիկայի վրա, այլ կոլեկտիվ աշխատանքի ու առաջավոր մեքենական տեխնիկայի վրա։

Սովետական իշխանության տարիներին աճեց նոր ինտելիգենցիա, որը ծնունդ է առել ժողովրդից, արյամբ կապված է ժողովրդի հետ և ծառայում է նրա շահերին։

Եվ ահա ՍՍՌՄ կյանքում տեղի ունեցած այս խոշոր փոփոխությունների հետևանքով կարիք զգացվեց փոփոխություն մտցնել նաև 1924 թվականին ընդունված Կոնստիտուցիայի մեջ։

1936 թվականի նոյեմբերին գումարվեց Սովետների Համամիութենական 8-րդ Արտակարգ համագումարը։ Համագումարում ՍՍՌՄ Կոնստիտուցիայի նախագծի մասին

ընկեր Ստալինը։
զեկուցումով հանդես եկավ Համառա-
Համագումարը համերաշխ կերպով Համագու-
տեց ՍՍՌՄ նոր Կոնստիտուցիան։ հաս-
մարի որոշմամբ Կոնստիտուցիայի հաստատ-
տատման օրը՝ դեկտեմբերի 5-ը հայտարար-
վեց համաժողովրդական տոն՝ ՍՍՌՄ Կոնս-
տիտուցիայի Օր։
Ստալինյան Կոնստիտուցիան օրենսդրա-
կանորեն վավերացրեց սոցիալիզմի հաղ-
թանակը ՍՍՌՄ-ում, այն համաշխարհային-
պատմական փաստը, որ ՍՍՌՄ-ում հիմնա-
կանում կառուցված է սոցիալիստական
հասարակություն

***

Ստալինյան Կոնստիտուցիայի գլխավոր
հիմքը կազմում են սոցիալիզմի սկզբունք-
ները, որոնք արդեն իրականացված են
ՍՍՌՄ-ում — արտադրության գործիքների
ու միջոցների սոցիալիստական սեփակա-
նությունը, շահագործման ու շահագործող
դասակարգերի վերացումը, մեծամասնու-
թյան աղքատության և փոքրամասնության
ճոխության վերացումը, գործազրկության
վերացումը և այլն։ Այս է ՍՍՌՄ Կոնստի-
տուցիայի արմատական տարբերություննե-
րից մեկը բուրժուական երկրների կոնստի-
տուցիաներից, որոնց գլխավոր հիմքն են



կազմում կապիտալիզմի սկզբունքները՝ ար-
տադրության գործիքների ու միջոցների մաս-
նավոր սեփականությունը, մարդու շահա-
գործումը մարդու ձեռքով, հասարակության
աշխատավոր մեծամասնության ապահովված
չլինելը և անաշխատ փոքրամասնության ճո-
խությունը և այլն։
ՍՍՌՄ Կոնստիտուցիայով ամրապնդված է
լենինյան-ստալինյան իմաստուն ազգային
քաղաքականության շնորհիվ մեր երկրի
ձեռք բերած խոշորագույն նվաճումներից
մեկը՝ բոլոր ազգերի ու ռասաների իրավա-
հավասարությունը։ Մինչդեռ բուրժուական
կոնստիտուցիաները ամրապնդում են մի
շարք ազգերի գերիշխանությունը մյուսների
նկատմամբ, ՍՍՌՄ Կոնստիտուցիան ապա-
հովում է բոլոր ազգերի և ռասաների լիա-
կատար իրավահավասարությունը մեր երկրի
տնտեսական, հասարակական, պետական և
կուլտուրական կյանքի բոլոր ասպարեզնե-
րում։
Բուրժուական կոնստիտուցիաներում խոս-
վում է ազատության, հավասարության և
եղբայրության մասին։ Բայց այդ բոլորը
կեղծիք է։ Ի՞նչ հավասարություն կարող է
լինել գոյության միջոցներից զուրկ, իր աշ-
խատանքը՝ գործարանատիրոջը վաճառող

աշխատավորի, միլիոնավոր գործազուրկների
ու երկրի ամբողջ հարստությունը զավթած
մի խումբ պորտաբույծների՝ կապիտալիստ-
ների ու կալվածատերերի միջև: Ամերիկայի
Միացյալ Նահանգներում հազար ընտանիք
վերջին պատերազմի և նրանից հետո անցած
տարիների ընթացքում ձեռք բերեցին 50 մի-
լիարդ դոլլար շահույթ, իսկ 14 միլիոն գոր-
ծազուրկ ամերիկացիներ զուրկ են գոյու-
թյան ամեն մի միջոցից: Միլիոնավոր գոր-
ծազուրկներ կան Անգլիայում, Իտալիայում
և բուրժուական մյուս երկրներում: Ահա
այսպիսին է այդ երկրներում մարդկանց մեջ
գոյություն ունեցող «հավասարությունը»:

Ինչպես ընկեր Ստալինն է նշել, ՍՍՌՄ
Կոնստիտուցիան չի սահմանափակվում քա-
ղաքացիների ձևական իրավունքների ֆիք-
սացիայով, այլ ծանրության կենտրոնը փո-
խադրում է այդ իրավունքներն ապահովե-
լու հարցի վրա, այդ իրավունքներն իրակա-
նացնելու միջոցների վրա: Նա ոչ թե սոսկ
հռչակում է քաղաքացիների իրավունքների
հավասարությունը, աշխատանքի իրավունքը,
դեմոկրատական ազատություններ, այլև
դրանք օրենսդրական կարգով ապահովում է
նյութական որոշ միջոցներով:

Սովետական Կոնստիտուցիան նշում է, որ



աշխատանքի իրավունքը մեր երկրում ա-
պահովվում է ժողովրդական տնտեսության
սոցիալիստական կազմակերպմամբ, սովե-
տական հասարակության արտադրողական
ուժերի անշեղ աճումով, տնտեսական ճգնա-
ժամերի հնարավորության վերացումով, գոր-
ծազրկության լիկվիդացումով:

Մեր երկրում ավարտված է կոմունիզմի
առաջին փուլի՝ սոցիալիզմի կառուցումը:
Այդ փուլի հիմնական սկզբունքն է, «յուրա-
քանչյուրից՝ ըստ նրա ընդունակությունների,
յուրաքանչյուրին՝ ըստ նրա աշխատանքի»:

«Սովետական ժողովրդի վրա,— ասում է
ընկեր Մալենկովը,— դամոկլյան սրի նման
չի կախված աղքատության և գործազրկու-
թյան սպառնալիքը: Ընդհակառակը, Սովետ-
ների երկրում յուրաքանչյուր աշխատավոր,
իր աշխատանքի համար ստանալով ըստ իր
ընդունակությունների, բոլոր հնարավորու-
թյուններն ունի իր կենսամակարդակը բարձ-
րացնելու համար»:

Ընկեր Ստալինը նշել է, որ ՍՍՌՄ Կոնս-
տիտուցիան հանդիսանում է աշխարհում
միակ, մինչև վերջը դեմոկրատական Կոնս-
տիտուցիան ըստ որի բոլոր քաղաքացիներն
իրոք որ հավասար են իրենց իրավունքների
մեջ: Սովետական Միությունում ոչ թե գույ-

քային դրությունը, ոչ թե ազգային ծագումը,
ոչ թե սեռը, ոչ թե պաշտոնական դրությու-
նը, այլ յուրաքանչյուր քաղաքացու անձնա-
կան ընդունակությունները ու անձնական
աշխատանքն են որոշում նրա դիրքը հասա-
րակության մեջ» (Ստալին)։

ՍՍՌՄ-ում պետության կառավարման,
պետական հարցերի քննման և լուծման գոր-
ծում մասնակցում է ամբողջ ժողովուրդը։ Նմ
այդ է սովետական դեմոկրատիզմի մե-
ծագույն ուժը։ Ոչ մի երկրում չկա ժողո-
վրդական մասսաների քաղաքական այն-
պիսի բարձր ակտիվություն, ինչպիսին հան-
դես է գալիս մեր երկրում։ Ցուցանշական է,
որ ԱՄՆ-ում, պրեզիդենտական վերջին
ընտրությունների ժամանակ քվեարկությանը
մասնակցեց ամբողջ ընտրողների մոտ կես
մասը։ Կարելի՞ է արդյոք այս համեմատել
այն ամենի հետ, ինչ տեղի է ունենում պե-
տական իշխանության օրգանների ընտրու-
թյունների ժամանակ մեր երկրում։ Ընտրու-
թյուններին մասնակցող ընտրողների թի-
վը մեզ մոտ անցնում է 99 տոկոսից։ Այս
թանում երևում է սովետական մարդկանց
կողմից իրենց քաղաքացիական պարտքի
բարձր գիտակցումը, սովետական հասա-



րակության բարոյական-քաղաքական միաս-
նությունը։

ՍՍՌՄ Կոնստիտուցիան սովետական բո-
լոր քաղաքացիների համար ապահովում է
նաև հանգստի իրավունք, կրթության իրա-
վունք, ձրի բուժօգնության իրավունք, ծերու-
թյան դեպքում նյութական ապահովության
իրավունք, մամուլի, խոսքի, խղճի, ազա-
տության իրավունք։

Սովետների 8-րդ համամիութենական Ար-
տակարգ համագումարում ՍՍՌ Միության
Կոնստիտուցիայի նախագծի մասին իր ար-
ված պատմական զեկուցման մեջ, խոսելով
նոր Կոնստիտուցիայի միջազգային նշանա-
կության մասին, ընկեր Ստալինը նշեց, որ
«Դա կլինի մի փաստաթուղթ, որը կվկայի,
թե այն, ինչի մասին երազել են և շարունա-
կում են երազել միլիոնավոր ազնիվ մարդիկ
կապիտալիստական երկրներում,— արդեն
իրականացվել է ՍՍՌՄ-ում։

Դա կլինի մի փաստաթուղթ, որը կվկայի,
թե այն, ինչ որ իրականացված է ՍՍՌՄ-ում,
լիովին կարող է իրականացվել նաև մյուս
երկրներում։

ՍՍՌՄ-ի նոր Կոնստիտուցիան բարոյական
օգնություն և իրական օժանդակություն կլի-
նի բոլոր նրանց համար, ովքեր այժմ պայ-

քար են մղում ֆաշիստական բարբարոսու-
թյան դեմ։
Ընկեր Ստալինի այս մարգարեական խոսա-
քերը լիովին արդարացան։ Ոգեշնչված Սովե-
տական Միության օրինակով և նրա օգնու-
թյամբ աշխարհի բոլոր ազատասեր ժողո-
վուրդները պայքար մղեցին ֆաշիզմի դեմ
հանուն իրենց ազատության և անկախու-
թյան։ Սովետական Միության օրինակով Ա-
րևելյան Եվրոպայի երկրների, Չինաստանի
ժողովուրդները տապալեցին պորտաբույծնե-
րի, շահագործողների տիրապետությունը,
իրենց մոտ հաստատեցին ժողովրդական դե-
մոկրատական կարգեր և Սովետական Միու-
թյան օրինակով ու օժանդակությամբ ոտք
դրին սոցիալիզմի ուղին։ Այդ երկրների աշ-
խատավորները ստեղծեցին իրենց նոր, դե-
մոկրատական կոնստիտուցիաները։

Բուրժուական դեմոկրատիայի անկման
կրախի ֆոնի վրա վեր է խոյանում մեր սո-
վետական, սոցիալիստական դեմոկրատիան,
որպես բոլոր դեմոկրատական ուժերի, բոլոր
առաջավոր մարդկանց հույսն ու հենարանը։

***

ՍՍՌՄ Կոնստիտուցիան օրենսդրականո-
րեն ամրապնդեց բոլշևիկյան մեծ պարտիա-
յի ղեկավար դերը սովետական պետության



մեջ։ Սովետական ժողովուրդը իր բոլոր
հաղթանակներին հասավ Լենինի-Ստալինի
պարտիայի ղեկավարությամբ։ Նրա քաղա-
քականությունը սովետական հասարակարգի,
սովետական դեմոկրատիայի կենսական
հիմքն է հանդիսանում։ Նրա աշխարհայա-
ցողությունը դարձավ ամբողջ սովետական
ժողովրդի աշխարհայացքը և դրոշը։

Սովետական Սոցիալիստական դեմոկրա-
տիայի հետագա զարգացման ճանապարհին,
Ստալինյան Կոնստիտուցիայի դրոշի ներքո,
նրա մեծ ստեղծողի, ընկեր Ստալինի ղեկա-
վարությամբ, սովետական ժողովուրդը նո-
րանոր հաղթանակների կհասնի կոմունիզմի
կառուցման գործում։

—O—

ԳԻՆԸ 50 ԿՈՊ.

## ՆՈՐ ԳՐՔԵՐ

Հայպետհրատի հրատարակությամբ լույս են տեսել.

Վ. Մ. ՄՈԼՈՏՈՎ.— Արտաքին քաղաքականության հարցեր: 648 էջ, գինը 10 ռ.:

ՆԱԻՐԻ ԶԱՐՅԱՆ.— Հացավան, 225 էջ, գինը 20 ռ.:

Շ. Մ. ԱՂԱԲԱԲՅԱՆ.— Վայրի խոտաբույսերի սերմերի հավաքումը և օգտագործումը: 53 էջ, գինը 10 ռ. 10 կոպ.:

Պատասխանատու խմբագիր՝ Հ. ԱՅՎԱԶՅԱՆ

ՎՖ 03339 Պատվեր № 895 Տիրաժ 8450

Հայպոլիգրաֆհրատի վարչության № 2 տպարան, Երևան

Отдел Пропаганды и агитации ЦК КП(б) Армении
БЛОКНОТ АГИТАТОРА
№ 23 1949 г.